Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՄԱՐՏ 6 1961



# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն—Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78։







Կոլտնտեսության նախագահի առանձնասենյակի պատից կախված գեղեցիկ դիագրամայի շուրջը հավաքվել էին Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի «Լենինյան ուղի» կոլտնտեսության մի խումբ անդամներ և աշխույժ զրուցում էին։ Նրանք խոսում էին կոլտնտեսության հեռանկարների մասին, վիճում միմյանց հետ և նոր առաջարկություններ անում։

— Մեր ոչխարաբույծների հաջողությունները տնտեսության մյուս բոլոր ճյուղերի համեմատությամբ ավելի փայլուն են,— ցուցափայտը շարժելով դիագրամայի 1960

թվականի ցուցանիշների վրայով, ժպիտը դեմքին հավաքվածներին է դիմում կոլտընտեսության վարչության նախագահ ընկ. Հ. Ալեքսանյանը։

— Հայկ ջան, այդ մասին մի լավ պատմի, ես էլ իմանամ,— նախագահին է դիմում կոլտնտեսության հիմնադիրներից մեկը, իննսունհինգամյա Օհան քեռին։ Կատարելով ծերունու խնդրանքը, նախագահն սկսում է պատմել։

— Մեր ոչխարաբուծական ֆերման շըրջանի խոշոր ֆերմաներից է,— ասում է նա։ Մեզ մոտ ոչխարների գլխաքանակը հասնում է 13 հազարի։ Անցյալ տարի մեր ոչխարաբույծները սոցիալիստական մրցությամբ ստանձնած 4,6 կիլոգրամի փոխարեն յուրաքանչյուր ոչխարից ստացան 5,2 կիլոգրամ բուրդ, որը 620 գրամով ավելի է 1959 թվականի ստացածից։ Եվ դրա արդյունքը եղավ այն, որ անցյալ տարի պետությանը հանձնեցինք ավելի քան 430 ցենտներ բուրդ, որը 100 ցենտներով ավելի է 1959 թվականի ստացածից և 50 ցենտներով ավելի 1960 թվականի պլանով նախատեսվածից։ Միայն մեկ տարվա ընթացքում ֆերման կոլտնտեսությանը բերեց ավելի քան երկու միլիոն ռուբլու օգուտ։



Օհան քեռին, որ ուշադրությամբ լսում էր նախագահի յուրաքանչյուր խոսքը, հիացած ասաց.

— Ապրե՛ք տղերք ջան, ես, որ իմ ամբողջ կյանքը անց եմ կացրել այս վայրերում, ծանոթ եմ մեր գյուղի ամեն մի թփին ու քարին, այդպիսի հաջողություն չեմ տեսել։

Ինչպես կոլտնտեսության բոլոր անդամներին, այնպես էլ Օհան քեռուն, ուրախացնում են ոչխարաբուծության հաջողությունները, հատկապես այն, որ ֆերման 1960 թվականին պետությանը վաճառել է երկու անգամ ավելի շատ միս, քան նախորդ տարում։

Մենք խնդրում ենք Խնձորեսկի կոլտընտեսության ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Սամվել Խաչատրյանին պատմել ոչխարաբուծության զարգացման գործում իրենց ձեռք բերած հաջողությունների մասին։

— Ոչխարաբուծությունը հաջողությամբ զարգացնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է ապահովել հոտի արագ աճը,— ասում է նա, և մի պահ խորհելուց հետո շարունակում.— անցյալ տարի յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել ենք 95 գառ, իսկ առաջավոր հովիվները՝ ավելի շատ։

Հոտում կարևոր նշանակություն ունի մայրական կազմի ավելացումը։ Մեզ մոտ այն հասնում է 70 տոկոսի։ Իսկ դա ամենից առաջ կախված է ոչխարների ձմեռային վաղ ծնի հաջող կազմակերպումից։ Մենք ոչխարների սերմնավորման աշխատանքներն սկսում ենք հուլիս ամսում, այն հաշվով, որ ծինն ստացվի նոյեմբեր և դեկտեմբեր ամիսներին։ Սերմնավորման համար օգտագործում ենք բարձր մթերատու արտադրող խոյեր և դրանով կանխում ստերջությունը, վարակիչ հիվանդությունները և ստանում շատ գառներ։

— Իսկ ի՞նչ առավելություններ ունի ձմեռային վաղ ծնի կազմակերպումը,— հարցնում ենք մենք։

— Գարնանային ծնի համեմատությամբ ձմեռային վաղ ծինը մի շարք առավելություններ ունի,— ասում է Սամվելը։— Նախ գառները մինչև գարուն արդեն մեծացած են լինում և կարողանում են հեշտությամբ ուտել թարմ խոտը, լավ են դիմանում գարնան փոփոխական եղանակներին, ցրտերին, անձրևներին, կորուստներ քիչ են լինում։ Գառները մայրերից անջատելուց հետո հանձնըվում են արոտային գիրացման և առանց լրացուցիչ ծախսերի, 40—45 կիլոգրամ



կենդանի քաշով վաճառում ենք պետությանը։ Բացի այդ, գառները խոշոր լինելով՝ խուզի ժամանակ բարձրորակ բուրդ են տալիս։

Ֆերմայի վարիչը պատմում է նաև ֆերմայի պլանների մասին։ Թբիլիսիում կայացած Անդրկովկասի գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում ունեցած իր ելույթում իրենց ֆերմայի աշխատողների անունից նա խոստացել է յուրաքանչյուր ոչխարից խուզել մինչև 5,5 կիլոգրամ բուրդ, պետությանը վաճառել 450 ցենտներ բուրդ, ոչխարի մսի արտադրությունը անցյալ տարվա համեմատությամբ ավելացնել 25 տոկոսով։ Մոտակա տարիների համար իրենց առջև խնդիր են դնում ոչխարների գլխաքանակը հասցնել 15 հազարի, իսկ յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը՝ 6—6,5 կիլոգրամի։ Եվ վստահ են, որ կհասնեն այդ բանին։

Հաջորդ օրը վաղ առավոտյան կոլտնտեսության նախագահի և ֆերմայի վարիչի հետ միասին մենք եղանք հեռավոր ձմեռային արոտներում։ Փարախներից նոր դուրս եկած սպիտակագեղմ ոչխարներն արածում էին հանդերում։ Անծայրածիր դաշտերում,

ամենուրեք մեր աչքերի առաջ փռվել էին ոչխարների հոտերը։

Առաջին հովիվը, որին մենք հանդիպեցինք, Հայաստանի Գերագույն Սովետի դեպուտատ Ավագ Աթաբեկյանն էր։ Արդեն բոլորել է նրա վաթսունհինգ տարին։ Սակայն նա տակավին առույգ է և աշխատասեր։ Տարեց հովվի հետ ունեցած զրույցից պարզվում է, որ նա խնամում է 404 ոչխար։ Ճանաչված ոչխարաբույծը յուրաքանչյուր ոչխարից խուզել է ավելի քան 6 կիլոգրամ բարձրորակ բուրդ և ստացել նախատեսված պլանից ավելի գառներ։ Շատ ոչխարներ ծնել են զույգ և նույնիսկ 3-ական գառ։ Նրա խնամած բոլոր գառներն էլ առողջ են ու առույգ։

— Ես այդ հաջողություններին հասել եմ իմ խնամքին հանձնված հոտի ցեղական կազմը շարունակ բարելավելու շնորհիվ,— ասում է հովիվը։

Առաջավոր ոչխարաբույծը անասունների լավ կերակրման և խնամքի շնորհիվ ձգտում է այս տարի ավելի բարձր հաջողությունների հասնել։

Մենք սրտանց շնորհավորում և հրաժեշտ ենք տալիս անվանի հովվին։

Փոքրիկ բլրաշարի վրա փռված ոչխարնե-





րի թևում հանդիպում ենք կոմերիտական Մելիք Թումյանին։

— Այս երիտասարդը մեր հպարտությունն է,— ասում է ֆերմայի վարիչ Խաչատրյանը։

Երիտասարդ հովիվը ամոթխածությունից շիկնում է, ավելի են բացվում նրա սև սաթի պես աչքերը։

— Մելիքը որպես պատգամավոր մասնակցել է Մոսկվայում կայացած կոմերիտմիության համամիութենական համագումարին, նա չէր գնում, հազիվ ուղարկեցինք,— ասում է կոլտնտեսության նախագահը։

— Ինչո՞ւ, Մոսկվայում շատ անգամ է եղել,— դիմում ենք նախագահին։

— Ոչ, Մոսկվայում նա բոլորովին չի եղել։ Բայց ասում էր, որ իմ ոչխարներն անտեր չեմ թողնի։ Մելիքի բարձր ցուցանիշները ցուցադրվեցին նաև Անդրկովկասի գյուղատնտեսության առաջավորների Թբիլիսիում տեղի ունեցած խորհրդակցության ժամանակ։

Մելիքը մի քանի անգամ անհանգիստ շարժումներ է անում և ոչխարի հոտին ուղղություն տալով նորից մոտենում է մեզ և հազիվ լսելի ձայնով, ժպտալով ասում.

— Իմ ապրուստը, իմ ուրախությունը ոչ-

խարներն են։ Մինչև հովիվ դառնալս ինձ շատ քչերն էին ճանաչում, իսկ հիմա...

Համեստությունը անվանի հովվին հարկադրում է քիչ խոսել իր մասին։

— 360 մայր ոչխարից Մելիքն ստացել է 470 գառ և յուրաքանչյուր ոչխարից՝ 5,4 կիլոգրամ բուրդ,— ասում է ֆերմայի վարիչը։

— Դրա համար մենք Մելիքին ներկայացրել ենք կառավարական պարգևատրման, — ֆերմայի վարիչին լրացնում է կոլտնտեսության նախագահը։

—Այս տարի ավելի բարձր արդյունքների կհասնեմ,— մեր հրաժեշտի պահին ասում է Մելիքը։

Մենք շարժվում ենք առաջ։ Ֆերմայի վարիչը մեզ ծանոթացնում է կոլտնտեսության առաջավոր մարդկանցից ևս մեկին՝ անվանի հովիվ Երվանդ Ապրունցին։ Վերջինս քանի տարի է, ինչ աշխատում է կոլտնտեսությունում որպես հովիվ։ Չկա մի տարի, որ նա բարձր ցուցանիշներ չունենա։

— Ինչպե՞ս են ձեր 1960 թվականի ցուցանիշները,— հարցնում ենք Երվանդ Ապրունցին։

— Ես խնամում եմ 580 ոչխար,— հպարտությամբ ասում է նա։— Պլանով նախատեսված 5,5-ի փոխարեն ամեն մի ոչխարից ստացել եմ 7,4 կիլոգրամ բուրդ։ Իմ խնամած հոտից մսի արտադրության համար վաճառած ամեն մի ոչխարի միջին քաշը կազմել է 72 կիլոգրամ։

Հեռվից լսվող սրնգի քաղցր ձայնը մեզ հրավիրում է հովիվ Գրիշա Արզանյանի մոտ։ Զաղ ոչխարները փռվել են խոտառատ ձմեռային արոտներում։ Արզանյանը փորձված հովիվ է։ Նա գիտի ոչխարների խնամքի և կերակրման բոլոր կանոնները։

— Ձմռանը ոչխարներին արածացնելիս,— ասում է ավագ հովիվը,— իմ հիմնական նպատակն է ոչխարներին պաշտպանել մրսելուց։ Դրա համար էլ ես հետևում եմ, որ նրանք միշտ արածեն և գտնվեն շարժման մեջ։

Առաջավոր հովիվը սիրում է իր աշխատանքը։ 1960 թվականին ոչխարաբուծության զարգացման, հատկապես շատ գառներ, բուրդ և միս արտադրելու համար կոլտնտեսության վարչությունը բացի հիմնական վարձատրությունից, լրացուցիչ կերպով նրան վճարել է 10 գլուխ ոչխար։ Առաջավորների շարքերում է նաև Արսեն Հախնազարյանը, որը 1960 թվականին միջին հաշվով յուրաքանչյուր ոչխարից ստացել է 6,2 կիլոգրամ բուրդ և 100 մայր ոչխարից՝ 106 գառ։

Կոլտնտեսության առաջավոր հովիվները որպես լրացուցիչ վարձատրություն ստացել են ավելի քան 18 հազար ռուբլի դրամ (հին փողով) և 31 գառ։

Արդյո՞ք միայն սրանք են առաջավոր հովիվները։ Ոչ։ Նրանք շատ ու շատ են, բայց մի՞թե հնարավոր է բոլորի մասին այստեղ խոսել։

Ձմեռային արեգակը իր վերջին շողերը հավաքելով՝ թաքնվեց լեռների թիկունքում։ Երկրի վրա իր թևերը փռեց մութ գիշերը։ Ոչխարներն ու գառները տեղավորվեցին իրենց համար պատրաստված եղեգնյա փարախներում։ Մեկ-մեկ լսվում էր ոչխարների և գառների մայունը։

Մենք շարժվում ենք դեպի հովիվների վրանները։ Այստեղ ստեղծված են հովիվների համար անհրաժեշտ բոլոր պայմանները։ Գործում է հարուստ գրադարանը՝ բազմաթիվ գրքերով, ստացվում են թերթեր և ամսագրեր...

Հաճելի է տեսնել, լավ կահավորված հովվական վրանները։ Ամենուրեք դրված են հարմարավետ մահճակալներ, ռադիոընդունիչ, սեղաններ, նստարաններ։

Վրաններից մեկում օրվա ժրաջան աշխատանքից հետո հովիվները հավաքված խո-





սում են իրենց հաջորդ օրվա անելիքների մասին, մի այլ վրանում ռադիոընդունիչը միացրած՝ նրանք հաղորդումներ կամ երաժշտություն են լսում, իսկ մի այլ վրանում հովիվները նստած առատ սեղանի շուրջը, վայելում են իրենց արդար աշխատանքի պտուղները, քեֆ անում, ուրախանում։

Հովվական սրնգի ու հայկական երաժշտության քաղցր հնչյունները տարածվում են շատ հեռու։ Այդ բոլորը քո մեջ առաջացնում է օրինական հպարտության ջերմ զգացում և ակամա մտածում ես.

— Կյանքը դարձել է գեղեցիկ, կյանքը դարձել է ավելի հետաքրքիր։ Ահա թե ինչն է թևավորում, նոր հաջողությունների կոչում խնձորեսկի ոչխարաբույծներին։

ՔՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ
ՀԿՊ Գորիսի շրջկոմի առաջին քարտուղար

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԱԴՐԲԵՋԱՆՈՒՄ

# ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ՀԱՐՅՈՒՐ ՄԱՅՐ ՈՉԽԱՐԻՑ 140 ԳԱՌ

Մարդու կյանքում կատարվում են իրադարձություններ, որոնք մոռանալ հնարավոր չէ։ Անդրկովկասյան ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությանը մասնակցելը, որտեղ այնքան փայլուն ճառով հանդես եկավ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նախագահ Ն. Ս. Խրուշչովը, հենց մի այդպիսի իրադարձություն էր իմ կյանքում։

Մեր գյուղը՝ Կարաբաշը, գտնվում է Կախի շրջանի մի գեղատեսիլ անկյունում։ Մեր արտելը հարուստ է, մարդիկ՝ աշխատասեր։ Կոլտնտեսային հոտերում կա 29400 ոչխար։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումում Ադրբեջանի ԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Յու. Ախունդովի զեկուցման մեջ հիշատակվեց նաև մեր կոլտնտեսությունը և, մասնավորապես, իմ բրիգադան։ Պետք է ասեմ, որ դա ոգևորեց մեզ։ Մենք հաստատապես որոշեցինք չհանգստանալ ձեռք բերածով, այլ ընթանալ ավելի առաջ,



ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալ երկրին։

Ինչպես ողջ սովետական ժողովուրդը, այնպես էլ մեր կոլտնտեսականները պարտավորվել են հարազատ պարտիայի XXII համագումարը դիմավորել նոր աշխատանքային հաջողություններով, ավելի լայնորեն օգտագործել ներքին ռեզերվները։ Անցյալ տարի մեր կոլտնտեսության եկամուտը կազմել է 8 միլիոն 300 հազար ռ.։ Յուրաքանչյուր ոչխարից միջին հաշվով խուզել ենք 4,2 կիլոգրամ բուրդ, յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել 125 գառ։ Իմ բրիգադայում այս ցուցանիշները համապատասխանաբար կազմում են 5,2 կիլոգրամ և 134 գառ։

Արդեն 18 տարի է, ինչ աշխատում եմ որպես հովիվ։ Ոչխարաբուծական ֆերմա եմ եկել ուղղակի դպրոցական նստարանից։ Պարտկազմակերպությունը և կոլտնտեսության վարչությունը մեծ հոգատարություն են ցուցաբերում հովիվներիս նկատմամբ, տարածում են առաջավորների փորձը։

Անցյալ տարի մեր հիմնական խնդիրը եղավ բրդի ավելացումը և գառների պահպանումը։ Այդ նպատակով մենք ժամանակին և բոլոր կանոններին համապատասխան կի-

*բառեցինք բոլոր զոոտանասնաբուծական միջոցառումները։ Ամենից առաջ բարելավեցինք ոչխարների ցեղը, այնպես որ բոլոր ոչխարներն էլ դարձան նրբագեղմ։*

*Հայտնի է, որ հովիվը, փարախները մաքուր ու կարգին պահելու դեպքում, սեզոնի վերջում միշտ էլ լավագույն ցուցանիշներ է ունենում։ Նրա խնամքին հանձնված ոչխարները տալիս են մեծ աճ։*

*Ամառային արոտավայրերում մենք ոչխարն արածացնում ենք նաև գիշերները։ Գիշերային արածացումը շատ լավ արդյունքներ է տալիս։*

*Ձմեռային արոտներում անասուններին հիմնականում տալիս ենք հյութալի կերեր։ Այս տարի մեր բրիգադային տրված է 12 տոննա հյութալի կեր և շատ խոտ։*

*Լավ աճ ստանալու գործում փոքր դեր չի խաղում նաև մայր ոչխարների ճիշտ բեղմնավորումը։ Մենք մեր աշխատանքն այնպես ենք կառուցում, որ ամեն տարի ծինը կատարվի փետրվարի 5-ից մինչև 20-ը։ Այդ օրերին ստանում ենք մինչև 50—60 գառ։*

*Մինիմումի է հասցված գառների անկումը։ Մեծ նշանակություն ենք տալիս ոչխարների կերակրմանը ձմռան սեզոնում։ Երբեմըն սառնամանիքներ են լինում, և գետինը ծածկվում է սառույցով։ Այդ ժամանակ մենք հոտը փարախից դուրս չենք թողնում։ Երբ սառնամանիքներն անցնում են, ոչխարը դուրս ենք բերում արոտավայր։ Բայց պետք է թույլ չտալ, որ ոչխարներն ուտեն սառած խոտը։ Սա պատճառ է դառնում զանազան ստամոքսային հիվանդությունների։*

*Այն օրերին, երբ Մոսկվայում կայանում էր ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը, մենք՝ հովիվներս, վերանայում էինք մեր 1961 թվականի սոցիալիստական պարտավորությունները։ Որոշեցինք յուրաքանչյուր ոչխարից խուզել 5,5 կիլոգրամ բուրդ, յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստանալ 140 գառ։ Նախատեսված է նաև բրիգադայում ոչխարի գլխաքանակը հասցնել 2050-ի, իսկ մայր ոչխարների քանակը՝ 600-ի։*

*Մենք՝ հովիվներս, խոսք ենք տալիս ՍՄԿՊ XXII համագումարը դիմավորել նոր աշխատանքային հաջողություններով։*

*ՆԱՋՄԵԴԻՆ ՍՈՖԻԵՎ*

Ադրբեջանի Կախի շրջանի 26 կոմիսարների անվան կոլտնտեսության ավագ հովիվ

# ՁԻՈՒՑՑ ՌԻՆԴ ԳՅՈՒՂՈՒՄ

Աշխույժ և հետաքրքիր են անցնում Եղեգ-
նաձորի շրջանի Ռինդ գյուղի կոլտնտվար-
չության նախագահ Խ. Ստեփանյանի զը-
րույցներն ունկնդիրների հետ։ Կոլտնտեսու-
թյան երեսնամյակի կապակցությամբ վեր-
ջերս նա զրույց ունեցավ կոլտնտեսականնե-
րի հետ ձեռք բերած հաջողությունների և
առաջիկայում նրանց անելիքների մասին։
— Կոլտնտեսային կարգերի հաղթանակի
շնորհիվ,— ասաց նա,— հիմնովին փոխվել
է գյուղը, դառն անցյալից միայն հուշեր են
մնացել։ Նախկին Դարալագյազի այդ հե-
տամնաց անկյունը այժմ դարձել է համա-
տարած գրագիտության և ծաղկուն կուլտու-
րայով սոցիալիստական գյուղ, որտեղ կոլ-
տնտեսականները մեծ հաջողությունների են
հասել գյուղատնտեսական մթերքների ար-
տադրությունն ավելացնելու գործում։— Աշ-
խատանքը,— շարունակում է ագիտատո-
րը,— որը նյութական ու կուլտուրական բա-
րիքների աղբյուր է, դարձել է մեր կոլտնտե-
սականների ամենակենսական պահանջը։
Մեր կոլտնտեսությունում իր գործնական





արտահայտությունն է գտել «ով չի աշխա-
տում, նա չի ուտում» սկզբունքը։ Դրանով
էլ պետք է բացատրել, որ վերջին տասնամ-
յակում մեզ մոտ չկան աշխօրերի պարտա-
դիր մինիմումը չկատարողներ, յուրաքան-
չյուր մարդ գիտի իր տեղը և անելիքը։

Մեր կոլտնտեսականներն այժմ ապրում
են հաշտ ու խաղաղ, զբաղված են ստեղծա-
գործական աշխատանքով։ Դրա վառ վկա-
յություններից է թեկուզ այն, որ վերջին 15
տարում գյուղում տեղի չեն ունեցել հասա-
րակական կարգի խախտումներ կամ հան-
ցագործ արարքներ։

Աշխատավորների կոմունիստական դաս-
տիարակությունը իր վառ արտացոլումն է
գտել կոլտնտեսային աշխատանքի բոլոր
բնագավառներում։ Կոլտնտեսությունում ան-
ընդհատ ավելանում է հանրային ունեցված-
քը։ Մարդիկ աշխատում են ազնվորեն և
վայելում նրա բարիքները։ Լավ աշխատան-
քի համար մեր կոլտնտեսությունը 1960
թվականին պարգևատրվեց Հայկական ՍՍՌ
Գերագույն Սովետի պատվոգրով։ Այդ պար-
գևը աշխատանքային նոր խանդավառություն
է առաջ բերել կոլտնտեսականների մեջ։

Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին
պատմում է, թե ինչպես իրենց մոտ սրբու-

թյամբ կենսագործվել են գյուղատնտեսության հետագա զարգացման մասին պարտիայի և կառավարության որոշումները։ — Հարազատ պարտիան օգնեց մեզ լավ տեսնել գյուղատնտեսական աշխատանքներում տեղ գտած թերությունները և կարճ ժամանակում վերացնել դրանք։

Ընթանալով պարտիայի նշած ուղիով, ավելացան կոլտնտեսության եկամուտները։ Եթե 1953 թվականին մենք խաղողի այգու ամեն մի հեկտարից ստանում էինք 58 ցենտներ բերք, այժմ այն հասցրել ենք 100—117 ցենտների։ Այդ կուլտուրայից ստացած դրամական եկամուտը 1953 թվականի կես միլիոնից հասել է երկու միլիոն ռուբլու։

Ծխախոտագործությամբ զբաղվում ենք 1939 թվականից։ Այդ արժեքավոր կուլտուրան դարձել է մեր հիմնական եկամտի աղբյուրը։ Այժմ ծխախոտի ամեն մի հեկտարից հավաքում ենք 30—31 ցենտներ միջին բերք։ Վերջին հինգ տարիներին ծխախոտագործությունից ստացվող կես միլիոն ռուբլու եկամուտը բերքատվության բարձրացման շնորհիվ աճել ու հասել է մեկ միլիոն 30 հազար ռուբլու։ Մեծ են մեր հաջողությունները հացահատիկի համախառն արտադրությունը ավելացնելու ուղղությամբ։



Սկսած 1946 թվականից այդ կուլտուրայից միշտ էլ կայուն ու բարձր բերք ենք ստանում։

Խոսելով այն մասին, թե կոլտնտեսությունում ինչպես են կենսագործվում պարտիայի և կառավարության որոշումները, ագիտատորը նշում է, որ վերջին տարիներին զգալի չափով բարձրացել է անասունների մթերատվությունը և ավելացել նրանց գլխաքանակը։ Առաջներում ունեցած 120 գլուխ խոշոր ու 220 գլուխ մանր եղջերավոր անասունների փոխարեն այժմ,— ասում է ագիտատորը,— մեր ֆերմաներում կա 564 գլուխ խոշոր և 2.071 գլուխ մանր եղջերավոր անասուն։ Ցուրաժային ամեն մի կովի կաթնատվությունը 318 լիտրից հասել է 1·319 լիտրի։ Մեծ չափերով աճել է նաև խոզերի ու թռչունների գլխաքանակն ու մթերատվությունը։ Հանրային հոտի վիճակը բարելավելու նպատակով վերջին մի քանի տարիներում Ստեփանավանի ու Կալինինոյի առաջավոր անասնաբուծական սովխոզներից գնել ենք ցեղական կովեր ու երինջներ. այժմ մեզ մոտ բարձր կաթնատու կովերի թիվը անհամեմատ ավելացել է։ Ստեղծել ենք կերի կայուն բազա։ Այդ նպատակով ցանում ենք եգիպտացորեն, կերային այլ կուլտուրաներ, բարելավում ենք խոտհարքներն ու

ամառային արոտավայրերը, խստիվ կիրառում ենք անասունների խնամքի ու կերակրման զոոկանոնները։

Տարեցտարի աճում ու ավելանում են կոլտնտեսության դրամական եկամուտները։ 1946 թվականի համեմատությամբ այժմ կոլտնտեսության դրամական եկամուտը աճել է 10 անգամ։ Դրա շնորհիվ կոլտնտեսությունում կառուցվում են արտադրական և հանրային օգտագործման շենքեր։ Անցած տարի շահագործման հանձնվեց կոլտնտեսության միջոցներով կառուցված միջնակարգ դպրոցի երկհարկանի շենքը, արդեն օգտագործվում է գյուղական կուլտուրայի տունը։ Այնուհետև ագիտատորը ունկնդիրներին համառոտ պատմում է կոլտնտեսականների եկամուտների ավելացման և նրանց նյութական բարեկեցության բարձրացման մասին։

— Դուք,— ասում է նա,— ձեր լավ աշխատանքի համար առատ վարձատրություն եք ստանում։ Վերջին 10 տարիների ընթացքում ամեն տարի յուրաքանչյուր աշխօրին բաժանվել է միայն դրամ 15—20 ռուբլի և գյուղատնտեսական այլ մթերքներ։ Ներկայումս ամեն մի կոլտնտեսական 2—3 տարվա հաց ունի։ Յոթանասնամյա Ղուկաս Բաբայանի ընտանիքը 1959 թվականին վաստակած 1.100 աշխօրի դիմաց ստացել է 26.400 ռուբլի դրամ, 4 տոննա հացահատիկ և այլ մթերքներ։ 1960 թվականին Հմայակ Խաչատրյանի, Ջանշիկ Անտոնյանի և ուրիշ շատ կոլտնտեսականների ընտանիքներ այնքան դրամ ու մթերքներ են ստացել, որը նրանց կբավարարի մի քանի տարի։

Բարեկեցիկ ու կուլտուրական կյանք են վարում կոլտնտեսականները։ 1955 թվականից սկսած ավելի քան 200 կոլտնտեսականներ կառուցել են երկհարկանի հարմարավետ բնակարաններ։ Գյուղը լրիվ էլեկտրիֆիկացված ու ռադիոֆիկացված է, 165 կոլտնտեսականներ վերջին տարիներում ձեռք են բերել ռադիոընդունիչներ։ Այժմ կոլտնտեսականները ձրիաբար դիտում են կինոնկարներ, օգտագործում էլեկտրաէներգիան, լողանում բաղնիքում. նրանք սեփական բնակարանային շինարարության համար անվճար ստացում են ձեռք բերած շինանյութը, վերամշակում տնամերձից և կոլտնտեսությունից ստացած խաղողի հումքը, օգտագործում կոլտնտեսության ավտոմեքենաները և այլն։

Վերջում ագիտատորը ունկնդիրներին պարզաբանում է առաջիկայում իրենց անե-

լիքները ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի որոշումները կենսագործելու ուղղությամբ։

— Հունվարյան պլենումում ընկեր Ն. Ս. Խրուշչովի արտասանած ճառը,— ասում է ագիտատորը,— նոր հորիզոններ են բացում սոցիալիստական գյուղատնտեսության բուռն զարգացման համար։ Ծանոթանալով պլենումի որոշումներին ու նրանց լույսի տակ վերլուծելով մեր կոլտնտեսության կատարած աշխատանքները, պետք է այսուհետև ևս ավելի լավ աշխատենք, լրիվ ու արդյունավետ օգտագործենք եղած բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները։

Ընթացիկ տարում մենք պետք է պայքարենք հեկտարից 12 ցենտներ հացահատիկի, 30 ցենտներ ծխախոտի, 80 ցենտներ խաղողի, 40 ցենտներ պտուղի, յուրաքանչյուր կովից 1.400 կգ. կաթի, 56 տոննա մսի, 145 տոննա կաթի ու 50 հազար հատ ձվի համախառն արտադրության համար։

Մեր յուրաքանչյուր կոլտնտեսականի առաջնահերթ խնդիրը պետք է լինի հայրենանվեր աշխատանքով նպաստել հարազատ կոլտնտեսության արտադրության վերելքին և արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորել ՍՄԿՊ XXII համագումարը։

Հ. ԱՍՏԱԲԱՑՅԱՆ



# ԱԳԻՏԱՑԻԱՆ ԹԱՂԱՄԱՍՈՒՄ

Կյանքը մեր երկրում առաջ է ընթանում սրընթաց թափով։ Յուրաքանչյուր օրը, յուրաքանչյուր շաբաթը նորանոր փոփոխություններ է առաջ բերում սովետական մարդկանց կյանքի բոլոր բնագավառներում։ Ընդամենը երկու տարի է անցել այն օրից, որ Կոմունիստական պարտիայի XXI համագումարը առաջադրեց 1959—1965 թվականների յոթնամյա պլանը։ Բայց որքա՜ն բան է փոխվել մեր երկրում այդ կարճ ժամանակամիջոցում, որքա՜ն նոր գործարաններ ու հանքահորեր են գործարկվել, որքա՜ն տներ ու երկաթուղիներ են կառուցվել, որքա՜ն գյուղեր ու քաղաքներ են բարեկարգվել, գեղեցկացնելով սովետական մարդկանց առօրյան, ավելի հարուստ ու բովանդակալից դարձնելով նրանց կյանքը։

Կոմունիզմ կառուցող սովետական մարդիկ կենդանի հետաքրքրություն են հանդես բերում այն բոլոր փոփոխությունների նկատմամբ, որոնց շնորհիվ օրըստօրե էլ ավելի է հզորանում մեր մեծ Հայրենիքը։

ნվ մեր բոլոր ագիտատորների համար, ու-տեղ էլ նրանք աշխատելիս լինեն, չկա ա-վելի պատվավոր և շնորհակալ գործ, քան մեր մարդկանց հետաքրքրությունների լրիվ ու բազմակողմանի բավարարումը։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ ու օգնությամբ ագիտատորները սիստեմատիկ քաղաքական աշխատանք տանելով բանվորների, կոլտնտեսականների ու ծառայողների շրջանում, նրանց մըշտապես բացատրում են սովետական ժողովրդի առջև դրված տնտեսական ու կուլտուրական շինարարության վիթխարի խնդիրները, բացահայտում միջազգային դրության և Սովետական պետության արտաքին քաղաքականության հարցերը, լայնորեն տարածում արտադրության առաջավորների աշխատանքի դրական փորձը։

Փոքր ինչ դրությունն այլ է, երբ ագիտատորը գործ է ունենում բնակչության այն մասի հետ, որն անմիջականորեն չի մասնակցում արտադրությանը։ Բնակչության բավականաչափ մեծաքանակ այս խումբը, որի մեջ մտնում են տնային տնտեսուհինե-



րը, կենսաթոշակառուները, հիվանդության պատճառով ժամանակավորապես աշխատունակությունը կորցրած մարդիկ, յուրահատուկ պայմանների հետևանքով շատ հաճախ հնարավորություն չեն ունենում ակտիվ մասնակցություն ցուցաբերել երկրի հասարակական-քաղաքական կյանքին, սիստեմատիկաբար հետևել նորություններին։

Այստեղ է ահա, որ գործունեության լայն ասպարեզ է բացվում ագիտատորի համար, ընդ որում ավելի դժվար ասպարեզ, քան արտադրությունում, որովհետև այստեղ ագիտատորը գործ ունի գիտելիքների ամենատարբեր մակարդակ և հետաքրքրությունների ամենատարբեր շրջանակ ունեցող մարդկանց հետ։ Բացի այդ, այստեղ ագիտատորի համար մի ուրիշ դժվարություն է առաջացնում նաև այն, որ տնային զբաղվածության հետևանքով միշտ չէ, որ հնարավոր է լինում ապահովել ունկնդիրների լրիվ մասնակցությունը ագիտպարապմունքին։ Ուրեմն ագիտացիոն աշխատանքը թաղամասում լավ կազմակերպելու համար անհրաժեշտ է ճիշտ հաշվի առնել այս երկու հանգամանքը։

Ինչպես ամենուրեք, այնպես էլ թաղամասում տարվող ագիտացիոն աշխատան-

քում ամենագլխավորը նրա բովանդակությունն է։ Ագիտատորի պարտականությունն է խնամքով նախապատրաստվել յուրաքանչյուր պարապմունքին։ Ձեռքի տակ ունենալով բազմաթիվ թերթեր, ամսագրեր և նույնիսկ առանձին գրքեր, ագիտատորը պետք է կարողանա դրանցից հմտորեն ընտրել այն նյութերը, որոնք առավել կարևոր են և առավել նշանակալից։ Իսկ այդպիսի նյութեր միշտ էլ կարելի է գտնել։ Մեր կյանքը շատ հարուստ է սովետական ժողովրդի անձնուրաց աշխատանքով։ Մեր ամբողջ երկիրը արժանավայել գործերով է դիմավորում ՍՄԿՊ XXII համագումարը։ Հենց այդ նյութերն էլ կարելի է օգտագործել զրույցի ժամանակ։ Բայց երբեմն լինում է և այսպես. ագիտատորը մեծ բարեխղճությամբ պատրաստվում է պարապմունքին, օգտվում է բազմաթիվ նյութերից, բլոկնոտում նշումներ անում և մեկնում թաղամաս։ Ունկնդիրների առջև բավականաչափ հաջող ելույթ ունենալուց հետո նա պատրաստվում է պատասխանել հարցերին։ Բայց, հակառակ սպասածին, ունկնդիրներից ոչ մեկը աշխուժություն հանդես չի բերում։ Ագիտատորը նկատում է, թե ինչպես մեկը հորանջում է, մյուսը իր մտքերով տարված



կկոցում է աչքերը, երրորդը նիրհում է և այլն։ Ի վերջո բոլորը վեր են կենում, անտարբերությամբ շնորհակալություն հայտնում և ցրվում իրենց տները։ Ինչո՞ւմն է բանը։ Բանը նրանումն է, որ ագիտատորը կամ սխալ է ընտրել զրույցի թեման և կամ հաշվի չի առել ունկնդիրների մակարդակը։ Հասկանալի է, որ այդպիսի ագիտացիոն պարապմունքից ոչ մի օգուտ սպասել չի կարելի։

Որպեսզի ագիտացիան լինի նպատակասլաց և հետաքրքիր, թաղային ագիտատորը պետք է լավ իմանա իր ունկնդիրներին. իմանա ոչ միայն նրանց գիտելիքների մակարդակը, այլև հետաքրքրությունների շրջանակը։ Դրանից հետո ագիտատորին մնում է պարզ ու մատչելի լեզվով շարադրել իր մտքերը։

Դեպի զրույցը ունկնդիրների ունեցած հետաքրքրության աստիճանը կարելի է որոշել զրույցից հետո ագիտատորին տրվող հարցերից, մտքերի փոխանակությանը ունկնդիրների ունեցած մասնակցությունից։ Եթե զրույցից հետո հարցերի միջոցով մտքերի փոխանակություն է սկսվում, ուրեմն կարելի է համոզված կերպով ասել, որ ագիտատորը հասել է իր նպատակին,

գրույցը դարձրել է հետաքրքիր, կարողացել է շարժել, աշխատեցնել ունկնդիրների միտքը։

Մեծ նշանակություն ունի ագիտատորի լեզուն։ Եթե ագիտատորը խոսում է միապաղաղ, իր միտքը շարադրում է ճոռոմ, երկարաշունչ նախադասություններով, անընդհատ օգտագործում է օտարերկրյա բառեր ու առանձին արտահայտություններ՝ առանց բացատրելու դրանց իմաստը, ապա ունկնդիրները շատ բան չեն հասկանա նման զրույցից։

Ուրեմն ագիտատորը պետք է շատ աշխատի իր լեզվի պարզեցման վրա, լայնորեն օգտագործի գեղարվեստական գրականությունը, ժողովրդական բանահյուսությունը, զանազան առածներն ու ասացվածքները, որոնցով այնքան հարուստ է մեր հնադարյան մշակույթը։

Ագիտացիոն աշխատանքի հաջողության գրավականներից մեկն էլ զրույցի ընթացքում տեղական կյանքից վերցված փաստերի և օրինակների լայն օգտագործումն է։ Եթե խոսքը գնում է, դիցուք, յոթնամյակի խնդիրների մասին, ապա որքա՜ն նպատակահարմար կլինի չօգտագործել մեր ռեսպուբլիկայի, տվյալ շրջանի, քաղաքի կամ



գյուղի կյանքից բերված օրինակները։ Չէ՞ որ մեր լայնածավալ Հայրենիքում չկա մի փոքրիկ բնակավայր, անգամ թաղամաս կամ փողոց, որտեղ յոթնամյա պլանը իր ուղղումները չմտցնի կյանքի որևէ բնագավառում։ Իսկ ունկնդիրներին առանձնապես հետաքրքրում է այն, թե ինչպիսի փոփոխություններ են տեղի ունենալու այնտեղ, որտեղ իրենք են ապրում։ Հետևաբար ոչ միայն անհրաժեշտ է, այլև յուրաքանչյուր ագիտատոր պարտավոր է իր զրույցը անպայման կառուցել տեղական փաստերի վրա։

Թաղամասերում տարվող ագիտացիոն փորձված ձևերից են խմբակային և անհատական զրույցները։ Որքան էլ բարեխիղճ լինի ագիտատորը, որքան էլ լավ կազմակերպի զրույցները, այնուամենայնիվ նա երբեք չի կարող ապահովել բոլոր ունկընդիրների մասնակցությունը ագիտզրույցներին, որոշ կանայք զբաղված են լինում տնային աշխատանքներով, կամ փոքրիկ երեխաներին խնամելով, որոշ հաշմանդամներ չեն կարողանում քայլել։ Պե՞տք է արդյոք նրանք դուրս մնան ագիտացիոն աշխատանքի ոլորտից։ Հասկանալի է, որ՝ ոչ։ Այդ պատճառով էլ բացի խմբակային զրույցներից, ագիտատորները անց են կաց-

նում նաև անհատական զրույցներ։ Անհատական զրույցների ժամանակ ագիտատորը չի կարող խոսել այնպես, ինչպես նա խոսում է մեծ խմբի հետ։ Անհատական զրույցը ագիտատորներին ավելի շատ հնարավորություն է տալիս անկաշկանդ խոսակցության, մտերմության, պարզության, մտքերի աշխույժ փոխանակության համար։ Խմբակային զրույցների կողքին անհատական ագիտացիայի ձևի օգտագործումը օգնում է ագիտատորին՝ ավելի անմիջականորեն մոտենալու մարդկանց, դառնալու նրանց բարեկամն ու խորհրդատուն։

Ճիշտ է ասված, որ հանձին ագիտատորի ունկնդիրը արդարացիորեն տեսնում է մեր պարտիայի ներկայացուցչին, նրա կարծիքն արտահայտողին, նրա որոշումների կատարման համար, աշխատավորների շահերի համար մարտնչողին։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ



# Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ

(Թվեր և փաստեր)

*Օրեցօր ծավալվում է նախահամագումարյան սոցիալիստական մրցությունը ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում և ամենուրեք։*

*Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի ռեսպուբլիկայի աշխատավորները շարունակում են ստանձնել նոր պարտավորություններ և պայքարում են այն պատվով կատարելու համար։ Ահա այդ մասին մի քանի տեղեկություններ։*

☆ *Ռեսպուբլիկայի Ժողտնտխորհի ձեռնարկությունների, կառույցների և կազմակերպությունների կոլեկտիվները ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի մտել են սոցմրցության մեջ և պարտավորություն ստանձնել պլանից դուրս երկրին տալու 15 միլիոն 604 հազար ռուբլու արդյունաբերական արտադրանք։*

☆ Պլանից դուրս ռեսպուբլիկան երկրին կտա 1.800 տոննա կաուչուկ, 10 հազար կոմպլեկտ ավտոդող, 5.000 տոննա կալցիումի կարբիդ, 300 տոննա ամոնիակի սելիտրա, 2.000 տոննա սուպերֆոսֆատ, 800 տոննա պղնձարջասպ, 1.500 տոննա ծծմբաթթու։

☆ Ժողտնտխորհի թեթև արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները դարձյալ պլանից դուրս երկրին կտան 40.000 մետր բրդե գործվածքներ, 100.000 մետր մետաքսե գործվածքներ, 100.000 կտոր տրիկոտաժե սպիտակեղեն, 50.000 կտոր տրիկոտաժե վերնազգեստ, 42.000 զույգ կոշիկ։

☆ Ժողտնտխորհի սննդի ձեռնարկությունները պարտավորվել են պլանից դուրս երկրին տալ 3 միլիոն պայմանական տուփ պահածո, 3.000 տոննա շաքարավազ, 800 տոննա կաթնամթերք և 300 տոննա միս։

☆ Պլանից դուրս երկիրը կստանա նաև 6.000 տոննա ցեմենտ, 200.000 պայմանական սալիկ շիֆեր, 100.000 ռուբլու կահույք և այլ արտադրանք։

☆ Կատարելով սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները՝ Ժողտնտխորհի ձեռնարկությունների կոլեկտիվները այս



տարի կտնտեսեն 13,35 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, 1.880 տոննա պայմանական վառելիք, 50 տոննա գունավոր մետաղ, արտադրության մեջ կարմատավորեն 9.200 նորարարական առաջարկություն և այլն։

☆ Պայքարելով սոցմրցությամբ ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու համար՝ արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվները նորանոր հաջողությունների են հասնում։ Երևանի ալյումինի գործարանի էլեկտրաձուլման ցեխի կոլեկտիվը. փետրվար և մարտ ամսվա պլանը գերակատարել է։

☆ Երևանի ավտոդողերի և ակումուլյատորների վերանորոգման գործարանի կոլեկտիվը հունվար ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 114,5, իսկ փետրվարինը՝ 116 տոկոսով։

☆ Սոցմրցության մեջ նոր հաջողության հասավ Երևանի «Խրոմպիկ» գործարանի կոլեկտիվը։ Փետրվար ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարված է 102,7 տոկոսով, թողարկված է նախատեսվածից ավելի բարձրորակ միաքրոմատ, արված է 18 նորարարական առաջարկություն։

★ Ստանձնած պարտավորությունները

գործի է վերածում նաև Երևանի ռետինատեխնիկական իրերի գործարանի կոլեկտիվը, որը փետրվար ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 105 տոկոսով և ապահովել մարտ ամսվա պլանների գերակատարումը։

☆ Նախահամագումարյան մրցությունից հաղթանակով դուրս գալու համար ջանք չեն խնայում Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի աշխատողները։ Այստեղ հավաքման ցեխում օգտագործման հանձնվեց 100 կիլովատից ավելի հզորությամբ գեներատորների հավաքման նոր կոնվեյեր, որը նախագծել ու պատրաստել են գործարանի ինժեներները։

☆ Անցած երկու ամսվա արտադրական պլանը պատվով կատարեցին Ղափանի պղնձահանքային կոմբինատի № 7—10 հանքի հանքագործները։ Նրանք ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի պլանից դուրս արդյունահանեցին մի քանի հարյուր տոննա հանքաքար։

☆ Հունվար և փետրվար ամսվա արտադրական պլանները գերակատարել են Երևանի Գինու կոմբինատի գինեգործները։ Կոմբինատում ավտոմատացվել ու մեքենայացվել է աշխատատար պրոցեսների ավելի քան 90 տոկոսը։



☆ Մեղրու շրջանի Լիճք գյուղի կոլտնտեսությունը կատարել է պետությանը ձու վաճառելու այս տարվա պետական պարտավորությունը։ Կոլտնտեսության թռչնապահները մեկ ու կես ամսում իրենց խնամած հավերից ստացել են 22 հազար ձու։

☆ Գարնանացանը կազմ ու պատրաստ է դիմավորում Գորիսի շրջանի Շինուհայր գյուղի կոլտնտեսությունը։ Դեռևս փետրվար ամսին, աշխատանքային 20 օրում կոլտնտեսության մեխանիզատորներն ավարտեցին գյուղատնտեսական մեքենաների և գործիքների վերանորոգումը։ Վերանորոգման աշխատանքներին նպաստեց այն հանգամանքը, որ կոլտնտեսությունն ունի իր սեփական արհեստանոցը։

☆ Այս տարի Հրազդանի շրջանի Վ. Ի. Լենինի անվան կոլտնտեսությունը 500 հեկտար տարածության վրա կատարելու է գարնանացան։ Գարնան գյուղատնտեսական աշխատանքները ագրոտեխնիկական ճիշտ ժամկետներին կատարելու նպատակով վերանորոգված են կոլտնտեսության բոլոր տրակտորները, շարքացանները, գութանները, կուլտիվատորները և գյուղատնտեսական մյուս մեքենաներն ու գործիքները։

☆ Բուռն թափով առաջ է գնում Հրազդա-

*նի լեռնաքիմիական կոմբինատի շինարարությունը։ Շուտով կավարտվի կոմբինատի շինարարության վայրը տանող ավտոճանապարհի շինարարությունը՝ 20 կիլոմետր երկարությամբ։ Արդեն ավարտվել է 114 տեղանոց ճաշարանի կառուցումը և շուտով շահագործման կհանձնվի այն։ Ավարտվել է նաև կոմբինատի վարչության շենքի և ավտոպարկի շինարարությունը։*

☆ *Կիրովականի Ալ. Մյասնիկյանի անվան կոմբինատի կոլեկտիվը գերակատարել է փետրվար ամսվա արտադրանքի թողարկման պլանը։ Կարբիդի թողարկման պլանը գերակատարված է 6,7 տոկոսով, ցիանամիդինը՝ 102, ամոնիակինը՝ 101 և կորունդինը՝ 111 տոկոսով։*

☆ *Իջևանի շրջանի Սարիգյուղի կոլտնտեսությունը ժամկետից մեկ ամիս շուտ է կատարել պետությանը միս վաճառելու առաջին եռամսյակի պլանը։ Վաճառված է 64 ցենտներ միս։*

☆ *Նույն շրջանի Լուսաձորի կոլտնտեսությունը առաջին եռամսյակում 75 ցենտների փոխարեն պետությանն է վաճառել 134 ցենտներ կաթ։ Ն. Աղդանի կոլտնտեսությունը 103 տոկոսով է կատարել կաթի վաճառքի եռամսյա պլանը։*



★ *Միկոյանի շրջանի Փոքր Սեպասար գյուղի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայում յուրաքանչյուր հարյուր մայր ոչխարից մինչև այժմ ստացել են 116 գառ։*

☆ *Աղինի շրջանի Մարալիկ գյուղի անասնաբույծները հաջողությամբ են կատարում ստանձնած պարտավորությունները։ Նրանք անասուններին բտելու միջոցով գերակատարել են պետությանը մսի վաճառքի եռամսյա պլանը։ Նախատեսված 120-ի փոխարեն երկու ամսում վաճառված է 131 ցենտներ միս։*

☆ *Գառնանացանը լավագույն նախապատրաստությամբ են դիմավորում Ախուրյանի շրջանի Մարմաշենի կոլտնտեսականները։ Ավարտված է գյուղատնտեսական մեքենաների և գործիքների վերանորոգումը։*

*Կոլտնտեսությունը դեռևս հունվար ամսին կատարեց պետությանը միս, իսկ փետրվարին ձու և կաթ վաճառելու այս տարվա առաջին եռամսյակի պլանը։*

Ռեսպուբլիկայի աշխատավորները սրբությամբ կկատարեն իրենց խոստումը՝ հարազատ կոմունիստական պարտիայի XXII համագումարը կնշանավորեն նոր և արժանավայել գործերով:

## 1961 ԹՎԱԿԱՆԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆ ՍՏԱՆԱԼՈՒ Է






# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԼԵՆԻՆՅԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԻ ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Կոմունիստական շինարարության նոր էտապը և մարքս-լենինյան տեսության մի քանի հարցեր, *ՍՄԿՊ XXI համագումարին տված զեկուցումից, էջ 130—157, Հայպետհրատ, 1959։*

Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱ— Հանուն Սովետների իշխանության, *տպագրված «Լենինյան ուղիով» ամսագրի 1960 թվականի 3-րդ համարում։*

Ս. Մ. ԿԻՐՈՎ— Լենինը և բանվոր դասակարգը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, էջ 54—57, Հայպետհրատ, 1958։*

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ— Վ. Ի. Լենինը և գյուղացիությունը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, Հայպետհրատ, 1958։*

Օ. Վ. ԿՈՒՈՒՍԻՆԵՆ— Լենինի գաղափարների կենսագործումը, *զեկուցում, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի ապրիլի 23-ի համարում։*

## 2. ԵՐԿՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՊԱՏԳԱՄՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՈՒՄԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Երկրի էլեկտրիֆիկացման լենինյան գաղափարների կենսագործումը կոմունիզմի հաղթանակի ճշմարիտ ուղին է, *ճառ՝ էներգետիկ շինարարության համամիութենական խորհրդակցությունում, 1959 թ. նոյեմբերի 28-ին, Հայպետհրատ, 1959։*

Գ. Մ. ԿՐԺԻԺԱՆՈՎՍԿԻ— Վլադիմիր Իլյիչի մասին, *Հայպետհրատ, 1955։*

## 3. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Աշխատանքային կարգապահության մասին, *Երկեր, հատոր 30, էջ 558—559, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Դարավոր կացութաձևի խորտակումից դեպի նորի ստեղծումը, *Երկեր, հատոր 30, էջ 660—663, Հայպետհրատ, 1951։*

Ն. Պ. ԳՈՐԲՈՒՆՈՎ— Ինչպես էր աշխատում Վլադիմիր Իլյիչը, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, էջ 72—78, Հայպետհրատ, 1958։*



## 4. ԼԵՆԻՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ինչպե՞ս կազմակերպել մրցությունը, *Երկեր, հատոր 26, էջ 493—506, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեծ նախաձեռնություն, *Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մոսկվա—Կազան երկաթուղու առաջին շաբաթօրյակից դեպի Համառուսաստանյան մայիսմեկյան շաբաթօրյակը, *Երկեր, հատոր 31, էջ 138—140, Հայպետհրատ, 1952։*

## 5. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Խաղաղություն ժողովուրդներին, *Երկեր, հատոր 26, էջ 57—60, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Դեկրետ հաշտության մասին, *Երկեր, հատոր 26, էջ 295—301, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Աշխարհն առանց զենքի, աշխարհն առանց պատերազմների, *երկրորդ հատոր, Հայպետհրատ, 1961։*

Կոմունիստական և բանվորական պարտիաների ներկայացուցիչների խորհրդակցության հայտարարությունը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 7-ի և 8-ի համարներում։*

## 6. ԼԵՆԻՆԸ ԵՎ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹՅՈՒՆԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— *Երիտասարդության մասին, Հայպետհրատ, 1955:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Կոմունիստական դաստիարակության մասին, *Հայպետհրատ, 1958:*

Ն. Ս. ԳԵՐՐ— Կոմերիտմիության օրրանի մոտ, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, էջ 455—462, Հայպետհրատ, 1958:*

Ա. ԲԵԶԻՄԵՆՍԿԻ— Լենինը կոմերիտմիության 3-րդ համագումարում, *տպագրված «Հիշողություններ Վ. Ի. Լենինի մասին» ժողովածուի 2-րդ հատորում, էջ 674—687, Հայպետհրատ, 1958:*

## 7. ԼԵՆԻՆԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՄԵԾ ԲԱՐԵԿԱՄՆ Է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին, *Երկեր, հատոր 32, էջ 402—405, Հայպետհրատ, 1952:*

Ա. Ֆ. ՄՅԱՍՆԻԿՅԱՆ— Իմ հանդիպումները ընկեր Լենինի հետ, *Հայպետհրատ, 1957:*

Լենինիզմը մեր դրոշն է, *«Լենինյան ուղիով» ամսագրի 1960 թվականի 4-րդ համարի առաջնորդողը:*

Գ. Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— Վ. Ի. Լենինը և Անդրկով-





կասի ժողովուրդների ազատագրումը, *Հայպետուսմանկհրատ, 1960:*

## 8. ԴԵՊԻ ՍՄԿՊ XXII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ հերթական XXII համագումարի հրավիրման մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը՝ *ընդունված 1961 թվականի հունվարի 10-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 11-ի համարում:*

Դեպի ՍՄԿՊ XXII համագումարը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 13-ի համարում:*

Պարտիայի և ժողովրդի մեծ միասնությունը, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի հունվարի 14-ի համարում:*

Ծավալվում է սոցիալիստական մրցությունը ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի, *նյութեր նվիրված ՍՄԿՊ XXII համագումարին, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի մարտ և ապրիլ ամիսների համարներում:*

## 9. ԲՈԼՈՐ ՈՒԺԵՐՆ Ի ՍՊԱՍ ԴՆԵՆՔ ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ԵՐՐՈՐԴ ՏԱՐՎԱ ՊԼԱՆՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆՆ ՈՒ ԳԵՐԱԿԱՏԱՐՄԱՆԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. Խրուշչով— ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը մեր ուժն է, կոմունիզմի գալիք հաղթանակների գրավականը, *ճառ՝ արտասանած Անդր-*

*կովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 12-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեին, Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցության մասնակիցների ճղած ողջույնը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 9-ի համարում։*

ՅԱ. Ն. ԶԱՐՈԲՅԱՆ— ՍՄԿՊ Կենտկոմի 1961 թվականի Հունվարյան պլենումի որոշման կատարումն ապահովող միջոցառումների մասին, *զեկուցում, տրված Անդրկովկասի ռեսպուբլիկաների գյուղատնտեսության առաջավորների խորհրդակցությունում, տպագրված «Ս. Հ.»-ի 1961 թվականի փետրվարի 7-ի համարում։*

Լ. Ս. ԽԱՉԱՏՐՅԱՆ—Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1961 թվականի պետական պլանի մասին, *զեկուցում Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի չորրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1960 թվականի դեկտեմբերի 30-ի համարում։*



## Ինքնագնաց բեռնակիր

Շատ խանութների և առևտրական պահեստների մոտ դեռևս հազվադեպ չէ տեսնել այսպիսի երևույթ. մոտենում է ավտոմեքենան և նրա շուրջը սկսում են իրար անցնել մի քանի մարդ. նրանք բեռնաթափում են արկղներ, տակառիկներ, պարկեր... Բայց լինում է և այսպես. բեռնատար մեքենային է մոտենում ինքնագնաց սայլակը, որը ղեկավարում է մեկ մարդ։ Մեխանիկական բեռնակիրը հատուկ բռնիչներով վերցնում է արկղը և զգուշությամբ դնում տեղափոխիչի վրա, եթե այդպիսին չկա, ապա՝ գետնի վրա։ Մի քանի րոպեից հետո ավտոմեքենան բեռնաթափված է, իսկ սայլակն սկսում է բեռը տեղափոխել խանութ կամ պահեստ, կանոնավոր դարսելով այն։

Այդ փոքր կաբարիտային նոր բեռնակիրը ստեղծված է Սվերդլովսկում, որը կատարում է տասը մարդու աշխատանք։

## Իրենք իրենց տաքացնող պահածոներ

Անգլիական պահածոների մի ֆիրմա թողարկել է ապուրների և կաթնային խմիչքների մի ամբողջ ասորտիմենտ մետաղյա տուփերում, որոնց հատակին

ջետեղված են փոքրիկ ամպուլներ։ Դրանց մեջ տեղավորված է քիմիական լիցք, որը հեշտությամբ կարելի է կպցնել ծխախոտի գլանակի վառվող ծայրի շփումով։ Դրա շնորհիվ 5 րոպեից ոչ ուշ տաքացվում է տուփի պարունակությունը։

Այդպիսի տուփեր հատկապես հարմար են ճամփորդության մեջ գտնվող մարդկանց, տուրիստների, որսորդների, ձկնորսների և ուրիշների համար։

## Գնդասեղի գլխիկի մեծության էլեկտրական լամպիկ

«Մինիատուրիզացիա»-ի՝ չափազանց մանր սարքերի ու գործիքների արտադրության փոքրիկ հրաշալիքներից մեկը խիստ փոքրիկ էլեկտրական լամպիկն է, որը կիրառվում է մեզ մոտ տեխնիկայում և բժշկության մեջ։ Այն ունի գնդասեղի գլխիկի մեծություն և նրա շիկացման թելերը հավասար են մազի մեկ տասներորդ մասին։ Այդպիսի լամպիկը սպառում է մեկ վոլտ լարվածության էլեկտրական հոսանք և տալիս է 25 վատտանոց լամպի մեկ հազարերորդ մասի չափ լույս։ Դա բավական է, որպեսզի մանրադիտական ապարատով լուսանկարվի սրտի խոռոչը, որտեղ սարքը մտցվում է հատուկ զոնդով։ Այդ մանր լամպիկներն օգտագործվում են էլեկտրոնային հաշվիչ սարքերում և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։

Նշումների համար

Նշումների համար



## СОДЕРЖАНИЕ



---

**ՈՒՂՂՈՒՄ**

*«Ա. բ.ծ-ի 5-րդ համարի 32-րդ էջի 2-րդ պարբերության 4-րդ և 6-րդ տողերում տպագրված «անգամ» բառերը կարդալ «տոկոսով»։*

---


Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Մ. Ս. Մելքումյան.— Վ. Ի. Լենինը ժողովրդական կրթության և աճող սերնդի կոմունիստական դաստիարակության մասին, 149 էջ, գինը 19 կ.։

Հիշողություններ Եղիշե Չարենցի մասին, 391 էջ, գինը 88 կ.։

Կ. Ա. Մնջոյան— Մեխանիկի համառոտ տեղեկագիրք, երկրորդ մաս, 255 էջ, գինը 91 կ.։

Կ. Մուրադյան— Խաղողի և պտղատու այգիների մշակության մեքենայացումը, 134 էջ, գինը 15 կ.։

Отдел пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 6 1961 г.

ՎՖ 10336 Պատվեր149 Տպաքանակ 9363

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆ արդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը՝ 8 կոպ.